Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք !

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1947

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.—Երևան, Նալբանդյան 22, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։




## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ
### (ՍՍՌՄ-ի ստեղծման 25-ամյակի առթիվ)

1922 թվականի դեկտեմբերի 30-ին Մոսկվայում տեղի ունեցավ ՍՍՌ Միության Սովետների առաջին համագումարը։ Համագումարին մասնակցում էին ներկայացուցիչներ Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայից, Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայից, Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայից և Անդրկովկասյան Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայից, որի կազմի մեջ մտնում էին Ադրբեջանական, Վրացական և Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաները։

Համագումարում ընկեր Ստալինը հանդես եկավ «Սովետական Ռեսպուբլիկաների միավորման մասին» պատմական զեկուցումով։

Ամփոփելով սովետական իշխանության գոյության հինգ տարվա ընթացքում անցած ուղու հանրագումարները, ընկեր Ստալինը համագումարի քննարկմանն առաջարկեց լիազոր դելեգացիաների կոնֆերենցիայի ընդունած Դեկլարացիան և Պայմանագիրը։

Այդ պատմական փաստաթղթերի մեջ, որոնք դրվեցին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծման հիմքում, պարզ ու հստակ հիմնավորվում էր մեր բազմազգ երկրի բոլոր իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորումը, սահմանվում էր այդ միավորման ձևը, նշվում ինչպես ընդհանուր-միութենական, այնպես էլ ռեսպուբլիկական օրգանների ֆունկցիաները։ Իբրև հասունացած անհրաժեշտություն Դեկլարացիան նշում էր Սովետական ռեսպուբլիկաների միավորումը մեկ միասնական պետության մեջ, որն ընդունակ լինի ապահովելու երկրի արտաքին անվտանգությունն ու ներքին տնտեսական բարգավաճումը, նրա ժողովուրդների ազգային ազատ զարգացումը։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն կազմելու Պայմանա-



գիրը պարունակում էր այն բոլոր հարցերը, որոնց հիման վրա միավորվում էին սովետական ռեսպուբլիկաները — թե որո՞նք են ՍՍՌ Միության գերագույն օրգանները, ի՞նչ հարցեր են պատկանում նրանց իրավասությանը, ի՞նչ հիմունքներով է կազմվում Սովետների համագումարը, համագումարների հրավիրման կարգը, ո՞վ է հրատարակում դեկրետները, ի՞նչ լեզուներով և այլն։

Պայմանագրի հատուկ կետով ՍՍՌ Միության մայրաքաղաք հռչակվում էր Մոսկվան — մեր Հայրենիքի սիրտը, բազմազգ Սովետական պետության բոլոր ժողովուրդների պարծանքը։

Ընկեր Ստալինի կողմից Սովետների առաջին համագումարին ներկայացված Դեկլարացիան ու Պայմանագիրը միաձայն ընդունվեցին համագումարի կողմից, և այդ պատմական օրը կազմվեց մեր մեծ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը։

Սովետական Ռեսպուբլիկաների միավորման Դեկլարացիայի և Պայմանագրի ընդունումը մեծագույն հաղթանակն էր լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության, որը մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդներին միավորեց միասնական եղբայ-

թական ընտանիքում՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ։ Այդ քաղաքականության հիմունքները մշակել էին պրոլետարիատի մեծ առաջնորդներ Լենինը և Ստալինը։

***

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռեվոլյուցիայի հաղթանակից հետո ընկեր Ստալինը, որպես Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսար, գործնականորեն գլխավորեց բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության ազգային քաղաքականությունը։ Ընկեր Ստալինը հսկայական աշխատանք է կատարել յուրաքանչյուր ազգային սովետական ռեսպուբլիկայի ստեղծման համար։ Չկա ոչ մի սովետական ռեսպուբլիկա, որի ստեղծման, զարգացման և ամրապնդման գործում ընկեր Ստալինը չունենար ամենաակտիվ ու ղեկավար մասնակցություն։

Դեռևս 1921 թվականին, մեր պարտիայի 10-րդ համագումարում տված իր զեկուցման թեզիսների մեջ, որոնք հաստատված էին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կողմից, ընկեր Ստալինը կանխատեսում էր Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ստեղծումը իբրև կապի-



տալիստական շրջապատման մեջ գտնվող մեր պետության կազմակերպման անհրաժեշտ մի ձև։ Ընկեր Ստալինն ասում էր.

«... Սովետական առանձին ռեսպուբլիկաների մեկուսացած գոյությունը անկայուն, անհաստատուն է, քանի որ կապիտալիստական պետությունների կողմից նրանց գոյության դեմ սպառնալիք կա։ Սովետական ռեսպուբլիկաների պաշտպանության ընդհանուր շահերը՝ մեկ կողմից, պատերազմի քայքայած արտադրողական ուժերի վերականգնման խնդիրը՝ մյուս կողմից, և հացապակաս սովետական ռեսպուբլիկաներին հացաշատ ռեսպուբլիկաների կողմից անհրաժեշտ պարենային օգնություն ցույց տալը՝ երրորդ կողմից,— հրամայաբար թելադրում են կնքել առանձին սովետական ռեսպուբլիկաների պետական դաշինք, իբրև իմպերիալիստական ստրկությունից ու ազգային ճնշումից փրկվելու միակ ուղին»։

Մեծ ուսուցիչ Լենինն ասել է՝ մենք կամենում ենք ազգությունների կամավոր դաշինք, այնպիսի դաշինք, որը չթույլատրի մեկ ազգի որևէ բռնություն մյուսի նկատմամբ, այնպիսի դաշինք, որը հիմնված լինի ամենալիակատար վստահության վրա, եղբայրա-

կան միասնության պարզ գիտակցման, միանգամայն կամավոր համաձայնության վրա։

Սովետական ավտոնոմիան և սովետական ֆեդերացիան էլ հենց հանդիսացան այն հիմնալի միջոցն ու ձևը, որոնք ապահովեցին դաշինքը մեր Հայրենիքի ժողովուրդների միջև։ Դրա փայլուն օրինակը եղան Ռուսաստանյան և Անդրկովկասյան ֆեդերացիաները։

Մինչև Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանություն հաստատվելը Անդրկովկասը ներկայացնում էր ազգամիջյան արյունահեղ ընդհարումների ասպարեզ։ Իմպերիալիստների լակեյները — դաշնակները՝ Հայաստանում, մենշևիկները՝ Վրաստանում և մուսավաթականները՝ Ադրբեջանում նացիոնալ-շովինիզմի վայրագ քաղաքականություն էին վարում, կազմակերպելով ազգամիջյան կոտորածներ։ Միայն սովետական իշխանության հաստատումը և Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծումը ազգային խաղաղություն և բարեկամություն բերեցին Անդրկովկասի ժողովուրդների համար։

1921 թվականի ապրիլին Վ. Ի. Լենինը Կովկասի կոմունիստներին ուղարկած նա-



մակի մեջ գրում էր, թե Կովկասի ռեսպուբլիկաների սերտ դաշինքը միայն «կստեղծի ազգային խաղաղության այնպիսի օրինակ, որի նմանը տեսնված չէ բուրժուազիայի օրով և անհնարին է բուրժուական կարգերում»։

Լենինի և Ստալինի խորհրդով 1922 թվականի մարտին ստեղծվեց Անդրկովկասյան ֆեդերացիան, որը գոյություն ունեցավ մինչև 1936 թվականը և պատմական կարևոր դեր խաղաց Անդրկովկասի ժողովուրդների ազգային բարեկամությունն ու համագործակցությունն ամրապնդելու գործում։

Սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաների միավորման կամպանիան սկսվել էր դեռ 1922 թվականի սեպտեմբերից։ Դրա նախաձեռնությունը պատկանում է Ադրբեջանական, Հայկական և Վրացական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաներին, որոնք 1922 թվականի հոկտեմբերին սովետական մյուս ռեսպուբլիկաներին առաջարկեցին պայմանագրային հարաբերություններից անցնել ավելի սերտ միավորման — ստեղծել միասնական, բազմազգ սոցիալիստական պետություն՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն։ Այդ առաջարկին միացան Ուկրաի-

նական և Բելոռուսական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաները։

Իրավահավասար ժողովուրդների եղբայրական բարեկամության վրա հիմնված՝ Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկան հանդիսացավ այն հիմքն ու ձգողական կենտրոնը, որի շուրջը համախմբվեցին նախկին Ռուսաստանյան կայսրության մեջ բնակվող բոլոր ժողովուրդները։

Երիտասարդ սովետական երկրի դեմ կազմակերպված ռազմական ինտերվենցիայի ձախողումից հետո, 1922 թվականին իմպերիալիստական գիշատիչները Սովետական Ռեսպուբլիկաների դեմ կազմակերպեցին դիվանագիտական ու տնտեսական ինտերվենցիա։ Այդ պայմաններում է՛լ ավելի անհրաժեշտ դարձավ Սովետական Ռեսպուբլիկաների գործունեության ու ջանքերի անհապաղ միավորումը։

1922 թվականի դեկտեմբերին հանդես գալով Սովետների Համառուսաստանյան 10-րդ համագումարում, ընկեր Ստալինն առավելագույն պարզությամբ և խորությամբ հիմնավորեց առանձին սովետական ռեսպուբլիկաները մեկ միասնական պետության մեջ միավորելու տնտեսական, արտաքին-քա-



ղաքական և ներքաղաքական անհրաժեշտությունը։ Ընկեր Ստալինը նշեց հանգամանքների երեք խումբ, որոնք անխուսափելի էին դարձնում սովետական ռեսպուբլիկաների միավորումը։

«Հանգամանքների առաջին խումբը այն փաստերն են, որոնք վերաբերում են մեր ներքին տնտեսական կացությանը։ ...մեր տնտեսական այն ռեսուրսների սղությունը, որ ռեսպուբլիկաների տրամադրության տակ մնացել են յոթնամյա պատերազմի հետևանքով,...աշխատանքի պատմականորեն առաջ եկած բնական բաժանումը, աշխատանքի տնտեսական բաժանումը մեր ֆեդերացիայի զանազան շրջանների ու ռեսպուբլիկաների միջև... ամբողջ ֆեդերացիայում հաղորդակցության հիմնական միջոցների միասնությունը, որոնք կազմում են ամեն մի հնարավոր միավորման ներվն ու հիմքը...

Հանգամանքների երկրորդ խումբը, որոնք որոշում են ռեսպուբլիկաների միավորումը, դրանք մեր արտաքին դրության հետ կապված փաստերն են։ Ես նկատի ունեմ մեր ռազմական դրությունը։ Ես նկատի ունեմ մեր հարաբերությունները արտասահմանյան կապիտալի հետ...

...Փաստերի երրորդ խումբը, որոնք նույն-

պես միավորում են պահանջում և կապված
են սովետական իշխանության կառուցվածքի
բնույթի, սովետական իշխանության դասա-
կարգային բնույթի հետ: Սովետական իշխա-
նությունն այնպես է կառուցված, որ նա, ին-
տերնացիոնալ լինելով իր ներքին էությամբ,
մասսաների մեջ ամեն կերպ արմատավորում
է միավորման գաղափարը, ինքն է նրանց
մղում դեպի միավորման ուղին»: (Ստալին):

Ընկեր Ստալինը ոչ միայն սպառիչ կեր-
պով բացահայտեց այն հանգամանքները,
որոնք պահանջում էին Սովետական ռես-
պուբլիկաների միավորում, այլև նշեց ՍՍՌ
Միության տնտեսության և կուլտուրայի հե-
տագա զարգացման հոյակապ խնդիրները:

Սովետական շինարարության հաջողություն-
ների զուգընթաց ՍՍՌՄ-ի մեջ էին մտնում
նոր ռեսպուբլիկաներ: 1925 թվականին Միջին
Ասիայում կազմակերպվեցին երկու ինքնու-
րույն միութենական Սովետական ռեսպուբ-
լիկաներ՝ Ուզբեկական և Թուրքմենական
ռեսպուբլիկաները, իսկ 1929 թվականին՝
Տաջիկական ռեսպուբլիկան: 1936 թվակա-
նին իբրև ինքնուրույն միութենական ռես-
պուբլիկաներ անմիջականորեն ՍՍՌՄ-ի
կազմի մեջ մտան Ադրբեջանական, Վրա-
ցական ու Հայկական, ապա նաև Ղազախս-



տան ու Կիրգիզական սովետական ռեսպուբ-
լիկաները: 1940 թվականին ՍՍՌՄ-ի կազմի
մեջ մտան Լիտվական, Լատվիական և Էս-
տոնական ռեսպուբլիկաները, ստեղծվեցին
Կարելո-Ֆիննական և Մոլդավական միութե-
նական ռեսպուբլիկաները:

Այսպիսով, Սովետական Սոցիալիստա-
կան Ռեսպուբլիկաների Միությունը դարձավ
տասնվեց իրավահավասար ռեսպուբլիկանե-
րի մի համերաշխ ընտանիք:

***

ՍՍՌ Միության գոյության 25 տարիները
իրականում ցույց տվին մեր ժողովուրդների
եղբայրական համագործակցության ուժն ու
կենսունակությունը: Սովետական Սոցիալիս-
տական Ռեսպուբլիկաների Միության ստեղ-
ծումը հսկայական նշանակություն ունեցավ
մեր ժողովուրդների անկախությունն ապա-
հովելու համար: Պետք է ուղղակի ասել, որ
եթե ՍՍՌՄ-ի ժողովուրդները միավորված
չլինեին միասնական Միության մեջ, ապա
նրանցից շատերը անխուսափելիորեն կդառ-
նային իմպերիալիստական գավթիչների զո-
հը, իսկ նրանց երկրները կվերածվեին կա-
պիտալիստական պետությունների գաղութ-
ների: Անջատ սովետական ռեսպուբլիկանե-
րը չէին կարողանա տնտեսական ու ռազմա

կան տեսակետից դիմանալ իմպերիալիս-
տական գիշատիչների գրոհներին։
Սովետական Միությունը, Լենինի-Ստալինի
մեր փառապանծ պարտիայի ղեկավարու-
թյամբ, ոչ միայն կարողացավ պահպանել
մեր միութենական ռեսպուբլիկաների ամ-
բողջականությունը, փայլուն կերպով դիմա-
նալ գերմանա-ֆաշիստական զավթիչների
դեմ մղված Հայրենական Մեծ պատերազմի
դաժան փորձություններին, այլև ապահովեց
մեր երկրի բոլոր ժողովուրդների ազգային
ազատ զարգացումը, նրանց տնտեսության
և կուլտուրայի վերելքը։
ՍՍՌ Միության ստեղծումը, որ լենինյան-
ստալինյան ազգային իմաստուն քաղաքակա-
նության խոշորագույն հաղթանակն է, սկիզբ
դրեց անցյալում ճնշված ժողովուրդների
տնտեսական և կուլտուրական հետամնա-
ցության վերացմանը։ Վերջ դրվեց անջատ
ռեսպուբլիկաների տնտեսական մանրատվա-
ծությանը։ Ռուս ժողովուրդը մեծագույն օգ-
նություն ցույց տվեց ազգային ռեսպուբլի-
կաներին՝ մատակարարելով նրանց արդյու-
նաբերական սարքավորում, կառուցելով տե-
ղերում գործարաններ ու ֆաբրիկաներ
Միևնույն ժամանակ անչափ աճեց
ՌՍՖՍՌ-ի տնտեսական հզորությունը։ Իր



էկոնոմիկայի ամբողջ հզորությամբ Ռուսաս-
տանյան ֆեդերացիան օգնություն է ցույց
տվել և այժմ էլ ցույց է տալիս մյուս եղբայ-
րական ռեսպուբլիկաների ժողովրդական
տնտեսության զարգացմանը։ Մոսկվան տա-
լիս է ավտոմոբիլներ, դազգահներ, բազմա-
տիպի մեքենաներ, Լենինգրադը՝ տուրբին-
ներ, գեներատորներ, զանազան սարքավո-
րում, Ուրալը և Սիբիրը տալիս են մետաղ,
Ստալինգրադը, Չելյաբինսկը, Վլադիմիրը,
Ալթայը՝ տրակտորներ, Սարատովը և Կրաս-
նոյարսկը՝ կոմբայններ, Ռոստովը՝ գյուղա-
տնտեսական մեքենաներ և այլն։
Հայրենական Մեծ պատերազմում ռուս
ժողովուրդն աչքի ընկնող դեր խաղաց, նա
ճանաչվեց իբրև Սովետական Միության ղե-
կավար ուժ մեր երկրի բոլոր ժողովուրդների
մեջ։
Հայրենական պատերազմի տարիներին
ՌՍՖՍՌ-ն տալիս էր Սովետական Միության
ամբողջ արդյունաբերական արտադրանքի
չորս հինգերորդ մասը։ Պատերազմից հետո
հերոսական ռուս ժողովուրդը նոր ուժով
սկսել է ժողովրդական տնտեսության վերա-
կանգնումն ու զարգացումը։ Ստալինյան նոր
հնգամյակի վերջում Ռուսաստանյան Ֆեդե-
րացիան կտա պողպատի միութենական

արտադրանքի 63 տոկոսը, ածխի արտադրանքի մոտ 57 տոկոսը, ավտոմոբիլների ընդհանուր արտադրության մոտ 92 տոկոսը, բամբակե գործվածքեղենի 87 տոկոսը, հացահատիկի ընդհանուր արտադրության համարյա երկու երրորդ մասը։

Ռուս մեծ ժողովրդի կողմից ցույց տրվող հսկայական օգնության և լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ, Ռուսաստանի նախկին հետամնաց ծայրամասերը դարձել են բարձր զարգացած սոցիալիստական ինդուստրիա և առաջավոր կոլխոզային գյուղատնտեսություն ունեցող ռեսպուբլիկաներ։

Եթե ամբողջ Սովետական Միության խոշոր արդյունաբերության համախառն արտադրանքը 1940 թվականին՝ 1913 թվականի համեմատությամբ աճել էր 10,9 անգամ, ապա Ղազախական ՍՍՌ-ում արդյունաբերության համախառն արտադրանքը աճեց 22,2 անգամ, Հայկական ՍՍՌ-ում՝ 22,3 անգամ, Վրացական ՍՍՌ-ում՝ 26,4 անգամ, Կիրգիզական ՍՍՌ-ում՝ 160 անգամ, Տաջիկական ՍՍՌ-ում՝ 242 անգամ։

Հայ ժողովուրդը երբեք չէր կարող երազել իր երկրի այնպիսի աննախընթաց զարգա-



ցում և ծաղկում, ինչպիսին նա ունի այժմ, Սովետական Ռեսպուբլիկաների մեծ ընտանիքում։ Սովետական Հայաստանը դարձել է ինդուստրիալ ռեսպուբլիկա՝ մեխանիզացիայի ենթարկված առաջավոր գյուղատնտեսությամբ, զարգացած կուլտուրայով, գիտությամբ ու արվեստով։ Այս բոլորի համար հայ ժողովուրդը պարտական է փառապանծ բոլշևիկյան պարտիայի լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքականությանը և մեծ Ստալինի ամենօրյա հայրական հոգատարությանը։

Ստալինյան նոր հնգամյակում է՛լ ավելի հոյակապ հեռանկարներ են բացվում մեր ռեսպուբլիկայի առջև։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը հնգամյակի վերջում կաճի 2,1 անգամ, էլեկտրոէներգիայի արտադրությունը 1940 թվականի համեմատությամբ կաճի 118 տոկոսով։

Նույնպիսի փայլուն հաջողություններ են ձեռք բերել Վրացական ու Ադրբեջանական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաները և մեր մեծ Միության մեջ մտնող մյուս սովետական ռեսպուբլիկաները։

***

Լենինի և Ստալինի հանճարով ստեղծված հզոր Սովետական Սոցիալիստական Ռես-

պուբլիկաների Միությունը խաղաղ շինարարության տարիներին կարողացավ դնել Հայրենական Մեծ պատերազմում տարած հաղթանակի ամուր հիմքերը։ ՍՍՌՄ-ում ստեղծված ծանր ինդուստրիայի, մեխանիզացիայի ենթարկված կոլխոզային գյուղատնտեսության և առաջավոր սովետական գիտության շնորհիվ մեր երկրի ժողովուրդները, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ ջախջախեցին գերմանա-ֆաշիստական զավթիչներին և ճապոնական իմպերիալիստներին։ Հայրենական պատերազմում Սովետական Միության տարած մեծագույն հաղթանակի վճռական գործոնը հանդիսացավ մեր երկրի բոլոր ժողովուրդների մեծ բարեկամությունը, նրանց բարոյական-քաղաքական անխորտակելի միասնությունը։

1941 թվականի նոյեմբերի 6-ին աշխատավորների դեպուտատների Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինն ասաց. «Գերմանացիները ենթադրում էին... թե առաջին իսկ լուրջ հարվածից և Կարմիր Բանակի առաջին անհաջողություններից հետո կոնֆլիկտներ կծագեն բանվորների ու գյուղացիների միջև, տուրուդմբոց կսկսվի ՍՍՌՄ ժողովուրդների միջև, ապստամբություններ



տեղի կունենան և երկիրը կտրոհվի բաղկացուցիչ մասերի... Բայց գերմանացիներն այստեղ էլ չարաչար սխալվեցին իրենց հաշիվների մեջ։ Կարմիր Բանակի անհաջողությունները ոչ միայն չթուլացրին, այլ ընդհակառակը էլ ավելի ամրապնդեցին ինչպես բանվորների և գյուղացիների դաշինքը, այնպես էլ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը»։

Դա սովետական ռեսպուբլիկաների ստալինյան անխորտակելի դաշինքն էր, և ոչ մի ուժ ի վիճակի չէր խախտելու այն, նրանց անջատելու միմյանցից։ Սովետական Միության ժողովուրդները Հայրենական պատերազմի ժամանակ ռազմաճակատում և թիկունքում է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին իրենց հարազատ կառավարության և բոլշևիկյան պարտիայի շուրջը։ ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունն արյամբ ամրապնդվեց Հայրենական պատերազմի ճակատներում։ Իրենց սրբազան Հայրենիքը պաշտպանելու համար մեկ մարդու պես ոտքի ելան Սովետական Միության բոլոր ժողովուրդները՝ Մոսկվայի, Լենինգրադի, Սևաստոպոլի, Կիևի, Մինսկի համար, Կովկասյան նախալեռներում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ հերոսաբար մար-

տրնչում էին ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները, ղազախներն ու կիրգիզները, հայերն ու վրացիները, թուրքմենները և մյուս եղբայրական ժողովուրդները: Ռուս մեծ ժողովրդի հետ ձեռք-ձեռքի տված, մեր հզոր Միության բոլոր ժողովուրդները թիկունքում և ռազմաճակատում կռվում էին հաղթանակը թշնամու դեմ, հանդես բերելով հերոսության և անձնվիրության չտեսնված օրինակներ:

Սովետական Միության Հերոսների փառապանծ ընտանիքում կան Սովետական Միության բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները՝ ավելի քան 7 հազար ռուսներ, հարյուրից ավելի հայեր, տասնյակ ադրբեջանականներ, նույնիսկ ադիգեական փոքրիկ ժողովուրդն էլ տվել է Սովետական Միության 23 հերոս: Դնեպրի ափերին, Կիևի ազատագրման հերոսական ճակատամարտում ցուցաբերած սխրագործությունների համար Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանն արժանացածների թվում կան մեր երկրի ավելի քան երեսուն ազգությունների ներկայացուցիչներ:

Հայրենական Մեծ պատերազմում էլ ավելի ամրապնդվեց ՍՍՌՄ ժողովուրդների ստալինյան բարեկամությունը: Յուրաքան-



չյուր ժողովուրդ ձգտում էր անել ամեն բան, թշնամու դեմ հաղթանակն ապահովելու համար: Սովետական հերոս ժողովրդի այս ջանքերը ընկեր Ստալինն ուղղեց մեր երկրի պաշտպանական հզորությունն էլ ավելի ամրապնդելու, ինչպես թշնամուն ջախջախելու նպատակին, որի հետևանքով ձեռք բերվեց սովետական ժողովրդի փայլուն հաղթանակը Հայրենական պատերազմում:

***

Հայրենիքի ազատության և անկախության համար մղված մարտերում ՍՍՌՄ ժողովուրդների համատեղ թափած արյամբ ամրապնդված ստալինյան մեծ բարեկամությունը նոր ուժով երևան է գալիս սովետական ժողովրդի հետպատերազմյան հերոսական սխրագործությունների մեջ, ստալինյան նոր հնգամյակը ժամկետից շուտ՝ չորս տարում կատարելու համար մղվող հերոսական պայքարում: Հզոր Սովետական Միության ուժն ու կենսունակությունը փայլուն կերպով դրսևորվում է պատերազմի և գերմանական օկուպացիայի հետևանքով ամենից ավելի տուժած ռեսպուբլիկաներին ցույց տրվող օգնության մեջ: Մեր ամբողջ երկիրը միահամուռ ջանքերով ավերակներից բարձրացնում է գործարաններն ու ֆաբրիկաները, է-

լեկտրակայանները, վերականգնում է քա-
ղաքներն ու գյուղերը։ Մոսկվայից և Լենին-
գրադից, Ուրալից և Սիբիրից, Միջին Ասիա-
յից և Անդրկովկասից անընդհատ հոսանքի
նման շարժվում են էշելոնները՝ սարքավոր-
մամբ և շինանյութերով Ուկրաինայի և Բե-
լոռուսիայի համար, Լիտվայի և Լատվիայի
համար, Էստոնիայի, Կարելո-Ֆիննական
ռեսպուբլիկայի, Մոլդավիայի համար։ Սո-
վետական Միության բոլոր ժողովուրդների
սերտ համագործակցությունը ժողովրդական
տնտեսության վերականգնման ու զարգաց-
ման հետպատերազմյան հնգամյակը չորս
տարում կատարելու լավագույն երաշխիքն է։
25 տարի է անցել այն օրից, երբ Լենինի և
Ստալինի առաջարկությամբ ՍՍՌՄ Սովետ-
ների առաջին համագումարն ընդունեց Սո-
վետական Սոցիալիստական Ռեսպուբլիկա-
ների Միություն ստեղծելու Դեկլարացիան
ու Պայմանագիրը։ Այս տարիների ընթաց-
քում մեր Հայրենիքի անցած հերոսական
ուղին ցույց է տալիս այդ պատմական փաս-
տաթղթերի մեջ մարմնավորված իդեաների
հանճարեղությունը։ Սոցիալիստական կար-
գերի շնորհիվ մեր երկրում փայլուն կերպով
իրագործվում է լենինյան-ստալինյան ազ-
գային քաղաքականությունը, ամրապնդվում



է բազմազգ Սովետական պետությունը, որն
այսօր ամբողջ աշխարհի առաջադեմ մարդ-
կության համար ծառայում է իբրև խաղա-
ղության և ժողովուրդների անվտանգության
հուսալի հենարան։ Ամբողջ առաջադեմ
մարդկությունն այժմ ընդունում է այն փաս-
տը, որ սովետական ժողովուրդը փրկեց եվ-
րոպայի քաղաքակրթությունը ֆաշիստական
ջարդարարներից և որ այդ բանում բացա-
ռիկ կերպով մեծ են ժողովուրդների հանճա-
րեղ առաջնորդ ընկեր Ստալինի ծառայու-
թյունները։
ՍՍՌՄ-ի ստեղծման 25-ամյակը սովետա-
կան ժողովուրդը նշում է արտադրական-
քաղաքական մեծ վերելքի պայմաններում,
աշխատավորների դեպուտատների տեղական
Սովետների ընտրություններն անցկացնելուց
հետո, որոնք կրկին անգամ ցուցադրեցին
սովետական ժողովրդի բարոյական-քաղա-
քական սերտ միասնությունն ու համախմբ-
վածությունը մեր բոլշևիկյան փառապանծ
պարտիայի շուրջը, նշում է ստալինյան նոր
հնգամյակի հոյակապ պլանները հաջո-
ղությամբ կատարելու և գերակատարելու
համար մղվող հերոսական պայքարի պայ-
մաններում։
Ռեակցիոն իմպերիալիստական շրջաննե-

րի տանձգությունների հանդեպ, որոնք ամեն միջոց գործադրում են մեր երկրի դեմ նոր պատերազմ հրահրելու համար, սովետական ժողովուրդը լավ է հիշում իր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի այն խոսքերը, թե «...ՍՍՌՄ ժողովուրդների միջև բարեկամությունը մեծ և լուրջ նվաճում է, որովհետև քանի այդ բարեկամությունը գոյություն ունի, մեր երկրի ժողովուրդները կլինեն ազատ և անպարտելի: Ոչ ոք սարսափելի չէ մեզ համար — ոչ ներքին և ոչ արտաքին թշնամիները, քանի այդ բարեկամությունն ապրում է և բարգավաճում»:

Ընկեր Մոլոտովը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի երեսնամյակի առթիվ տված իր զեկուցման մեջ ՍՍՌ Միության ստեղծողների մասին ասաց.

«Մեծ Լենինը դրեց Սովետական պետության հիմքերը և մեր երկիրը դուրս բերեց սոցիալիզմի ուղին, որը վերջ դրեց մարդու կողմից մարդու դարավոր շահագործմանը: Լենինի ուղին տանում է դեպի ժողովուրդների ազատությունն ու երջանկությունը, դեպի մարդկության ազատությունն ու երջանկությունը:

Մեծ Ստալինը մեր ժողովրդին առաջնորդել և առաջնորդում է կոմունիզմի փառա-



պանծ ուղիով: Ստալինի անունը, որ շրջապատված է ժողովուրդների անսահման հարգանքով ու սիրով, արտահայտում է հաղթական Սովետական Միության վեհությունը և պայքարի է կոչում համայն մարդկության երջանիկ ապագայի»:

Սովետական Միության ժողովուրդները եղբայրական սերտ բարեկամությամբ, բոլշևիկյան պարտիայի ղեկավարության ներքո, Լենինի դրոշով, Ստալինի առաջնորդությամբ հաղթականորեն ընթանում են առաջ, դեպի կոմունիզմը:

---*---

# ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱ

Երկրորդ համաշխարհային պատերազմի կարևորագույն արդյունքներից մեկն այն եղավ, որ իմպերիալիստական սիստեմից դուրս ընկան Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայի մի շարք երկրներ։ Այդ երկրների ժողովուրդները, Սովետական Միության մեծ օրինակով, հաղթական Սովետական Բանակի ազատարար դերով ոգեշնչված, ազգային-ազատագրական պայքարի ելան ֆաշիստական զավթիչների ու նրանց աջակիցների դեմ։

Ֆաշիստական տիրապետությունից ազատագրված ժողովուրդները մերձդանուբյան երկրներում իշխանությունից հեռացրին բուրժուակալվածատիրական վերնախավին, որն իրեն վարկաբեկել էր հիտլերյան զավթիչների հետ համագործակցելու հետևանքով։ Իշխանության գլուխ անցան ժողովրդի ծոցից ելած նոր ուժեր, որոնք իրենց ցույց էին տվել ֆաշիստական կեղեքիչների դեմ մղած պայքարում։ Անչափ աճեց բանվոր դասակարգի և



նրա ավանգարդը հանդիսացող կոմունիստների ազդեցությունն ու հեղինակությունը, որոնք ֆաշիզմի դեմ ամենից ավելի հետևողական, անհաշտ և հերոսաբար մարտնչողներն էին։

***

Նոր դեմոկրատիայի երկրների թվում Չեխոսլովակիան առանձնակի տեղ է գրավում իբրև արդյունաբերական տեսակետից առավել զարգացած երկիր։ Որպես ինքնուրույն պետություն, ժամանակակից Չեխոսլովակիան ստեղծվեց 1918 թվականին, իմպերիալիստական Ավստրո-Հունգարիայի ավերակների վրա։

Երկար դարերի ընթացքում Չեխոսլովակիայի ժողովուրդները կրել են գերմանական զավթիչների դաժան լուծը, որոնք այնտեղ կիրառում էին գերմանացման իրենց անողոք քաղաքականությունը։ Բայց ո՛չ ծանր տառապանքները, ոչ անհամար զոհերն ու զըրկանքները չընկճեցին չեխերի ու սլովակների կամքը, որոնք շարունակում էին պայքարել իրենց ազգային անկախության համար։

Ռուսաստանում տեղի ունեցած Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան, որը հռչակեց ազգերի ինքնորոշման և ինքնուրույն պետական գոյության իրավունքը,

մեծ ազդեցություն ունեցավ Չեխիայի և Սլովակիայի ազգային-ազատագրական շարժման վերելքի վրա։

Բազմազգ իմպերիալիստական պետություն՝ Ավստրո-Հունգարիան չդիմացավ առաջին համաշխարհային պատերազմի փորձություններին, և 1918 թվականի հոկտեմբերի 27-ին կապիտուլյացիայի ենթարկվեց Անտանտայի առջև։ Հաջորդ օրը Պրագայի Ազգային Կոմիտեն հռչակեց Չեխոսլովակյան պետության անկախությունը։

Չեխոսլովակիայի աշխատավոր մասսաները, որոնք դարեր շարունակ երազել էին ազգային և դասակարգային ճնշումը ոչնչացնելու մասին, պայքարել սլավոնական ժողովուրդների բարեկամության և միասնության համար, ձգտում էին ուժեղացնել կապերը Սովետական Ռուսաստանի հետ, հանձին նրա արդարացիորեն տեսնելով իրենց հավատարիմ բարեկամին։ Բայց Չեխոսլովակիայում իշխանությունն ընկավ խոշոր բուրժուազիայի ու կալվածատերերի ձեռքը։ Պետության ներսում եղած ռեակցիոն ուժերը, արտասահմանյան ռեակցիայի աջակցությամբ, ամեն կերպ ճնշում էին չեխոսլովակյան ժողովրդի դեմոկրատական ձգտումները։ Արտաքին քաղաքականության բնագավառում այդ ուժերը



Սովետական Միության նկատմամբ թշնամական դիրք էին գրավում։

Չեխոսլովակյան ռեակցիայի ներքին և արտաքին հակաժողովրդական քաղաքականությունը վերջ ի վերջո հասցրեց այն բանին, որ Չեխոսլովակիան մասնատվեց և օկուպացիայի ենթարկվեց գերմանա-ֆաշիստական զորքերի կողմից։

Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջաններն էին ամբողջությամբ որոշում չեխական ռեակցիայի արտաքին քաղաքականությունը։ Զգտելով ֆաշիստական Գերմանիային պատերազմի դրդել Սովետական Միության դեմ, Անգլիան և Ֆրանսիան 1938 թվականին Հիտլերի հետ կնքեցին Մյունխենյան համաձայնագիրը, դավաճանեցին Չեխոսլովակիային, մատնելով նրան գերմանա-ֆաշիստական զավթիչների հոշոտմանը։ Չեխոսլովակիայի համար այդ մռայլ օրերին միայն Սովետական Միությունը վճռականորեն հանդես եկավ չեխոսլովակյան անկախության պաշտպանությամբ, առաջարկելով անհապաղ կոլեկտիվ գործողություններ կիրառել ընդդեմ ագրեսորի։ Բայց ՍՍՌՄ-ի նախաձեռնությունն աջակցության չհանդիպեց Անգլիայի ու Ֆրանսիայի կողմից։

Չեխոսլովակյան ժողովուրդն ընկավ գեր-

մանա-ֆաշիստական զավթիչների լծի տակ։
Անսահման էին հիտլերյան օկուպացիայի
վեց տարվա ընթացքում չեխոսլովակյան ժո-
ղովրդի կրած զրկանքներն ու նվաստացումը։
Քաջարի Սովետական Բանակը, ջախջախելով
գերմանա-ֆաշիստական հրոսակախմբերին,
օգնեց չեխոսլովակյան ժողովրդին հիտլեր-
յան բռնակալության դեմ նրա ազատագրա-
կան պայքարում։

Ֆաշիստական օկուպացիայի վեց տարինե-
րի տխուր փորձը շատ բան սովորեցրեց չե-
խոսլովակյան ժողովրդին։ Ժողովրդական լայն
մասսաները հասկացան, որ Չեխոսլովակիա-
յի վերածնունդը հնարավոր է միմիայն նոր
հիմունքներով։ Ֆաշիստական զավթիչներից
ազատագրված չեխոսլովակյան ռեսպուբլի-
կայում արմատապես փոխվեց դեմոկրատիա-
յի և ռեակցիայի ուժերի հարաբերակցու-
թյունը։ Չեխոսլովակյան ժողովուրդը հաս-
տատապես կանգնեց նոր դեմոկրատիայի
կառուցման, տնտեսական, քաղաքական,
ազգային և հասարակական կյանքի բոլոր
բնագավառներում դեմոկրատական լայն վե-
րափոխումների կիրառման ուղու վրա։

Նոր Չեխոսլովակիայի կարևորագույն ա-
ռանձնահատկությունն այն է, որ երկրում



գոյություն ունի չեխերի և սլովակների Ազ-
գային ճակատ, որը Չեխոսլովակյան պետու-
թյան դեմոկրատական ուժերի քաղաքական
միավորումն է հանդիսանում։ Երկիրը ղեկա-
վարում է Ազգային ճակատի կառավարու-
թյունը, որի կազմի մեջ մտնում են չեխական
և սլովակյան հիմնական քաղաքական պար-
տիաների ներկայացուցիչները։

Չեխոսլովակիայում ստեղծված ժողովրդա-
կան-դեմոկրատական ռեժիմի շնորհիվ աշ-
խատավորները հնարավորություն ստացան
ստեղծելու և զարգացնելու իրենց մասսայա-
կան կազմակերպությունները։ Չեխոսլովա-
կիայի միասնական դեմոկրատական պրոֆ-
միությունները միավորում են ավելի քան
երկու միլիոն մարդ։ Հարյուր հազարավոր
անդամներ ունեն գյուղացիական, երիտա-
սարդական, կանանց և կոոպերատիվ կազ-
մակերպությունները։

Ժողովրդի բոլոր ուժերի միավորումն ու
ամրապնդումը կարևոր դեր խաղաց չեխոսլո-
վակյան պառլամենտի առաջին ընդհանուր
ընտրություններում, որոնք տեղի ունեցան
1946 թվականի մայիսին։ Ընտրությունների
արդյունքները վկայում են, որ չեխոսլովակ-
յան ժողովուրդը հավանություն է տալիս դե-
մոկրատական վերափոխումների ուղուն և

կողմնակից է նոր դեմոկրատիայի ռեժիմի
հետագա զարգացմանն ու ամրապնդմանը:
Պառլամենտական ընտրություններում խոշոր
հաղթանակ տարավ Չեխոսլովակիայի կո-
մունիստական պարտիան, որը չեխական
մարզերում ստացավ բոլոր ձայների 40 տո-
կոսից ավելին:

Ընտրություններից կարճ ժամանակ հետո
պրեզիդենտ Բենեշը Չեխոսլովակյան կոմ-
պարտիայի ղեկավար Կլեմենտ Գոտվալդին
հանձնարարեց կազմել նոր կառավարություն:
Նոր կառավարության ծրագրային հայտարա-
րության մեջ ասված էր, որ ներքին քաղա-
քականության ասպարեզում կառավարու-
թյունն իր առջև դնում է երկու խնդիր.

1. Նոր կոնստիտուցիայի մշակումը, որն
ամենից առաջ կօրինականացնի տնտեսա-
կան, սոցիալական, քաղաքական ու ազգա-
յին այն վերափոխումները, որոնք Չեխոսլո-
վակիայում կատարվեցին ֆաշիստական
զավթիչների դեմ մղված պայքարի ժամա-
նակաշրջանում և ազատագրումից հետո երկ-
րի վերականգնման առաջին տարվա ընթաց-
քում:

2. Վերակառուցման երկամյա պլանի իրա-
գործումը, որի նպատակն է բուժել ֆաշիս-
տական օկուպացիայի ու պատերազմի հե-



տեանքով պատճառված վերքերը և արդյու-
նաբերության ու գյուղատնտեսության ար-
տադրանքը հասցնել մոտավորապես մինչ-
պատերազմյան մակարդակին:

Այնուհետև հայտարարության մեջ ասվում
էր, որ կառավարությունը առաջվա նման
կամրապնդի տնտեսական ու քաղաքական
հարաբերությունները Չեխոսլովակիայի ա-
րևելյան մեծ դաշնակցի՝ ՍՍՌՄ-ի հետ և կի-
րականացնի դեմոկրատական մյուս երկրնե-
րի հետ բարեկամության տրադիցիոն քա-
ղաքականությունը:

Գոտվալդի կառավարությունը մշակեց և
Օրենսդրական ժողովի հաստատմանը ներ-
կայացրեց ռեսպուբլիկայի էկոնոմիկայի վե-
րականգնման ու զարգացման երկամյա պը-
լանը (1947—1948 թվականների համար):
1946 թվականի հոկտեմբերին այդ պլանը
հաստատվեց պառլամենտի, իսկ այնուհետև
ռեսպուբլիկայի պրեզիդենտի կողմից և դար-
ձավ օրենք:

Ֆաշիստական զավթիչներից ազատագրվե-
լուց հետո երկրի քաղաքական և տնտեսա-
կան կյանքում տեղի ունեցած հսկայական
փոփոխությունները միայն հնարավոր դար-
ձրին երկամյա պլանի ստեղծումը: Պետու-
թյան ձեռքն անցան բանկերը և ապահովա-

գրական ընկերությունները, ամբողջ լեռնա-
յին և մետալուրգիական արդյունաբերությու-
նը, էլեկտրակայանները և արդյունաբերու-
թյան մյուս ճյուղերի առավել խոշոր ձեռ-
նարկությունները։ Ազգայնացված են Շկո-
դայի աշխարհահռչակ ռազմական գործա-
րանները, Բատիի կոշկեղենի ձեռնարկու-
թյունները, որոնք խոշորագույնն են Եվրո-
պայում, և այլ ձեռնարկություններ։ Ազգայ-
նացված հատվածը բանվորների և ծառայող-
ների թվի տեսակետից կազմում է ավելի
քան 70 տոկոսը։ Երկրի էկոնոմիկայի մեջ
իշխող դիրքերին տիրանալը պետությանը
տնտեսական պլանավորման ռեալ հնարավո-
րություն տվեց։

Կարևոր նշանակություն ունեցավ նաև ժո-
ղովրդական իշխանության կողմից կիրառվող
ագրարային ռեֆորմը. գյուղատնտեսական
բանվորները և սակավահող գյուղացիները
ստացան մոտ 1 միլիոն 400 հազար հեկտար
վարելահող, որն առաջ պատկանում էր գեր-
մանական և հունգարական բարոններին, ֆա-
շիստներին և ֆաշիստական դավթիչների հետ
համագործակցող անձանց։

Անհրաժեշտ է մատնանշել, որ երկրի էկո-
նոմիկայի զարգացման և ամրապնդման գոր-
ծում մեծ նշանակություն ունեն Չեխոսլովա-



կիայի ու ՍՍՌՄ-ի միջև բարեկամական հա-
րաբերությունները, որոնց հիմքն է հանդիսա-
նում 1943 թվականի դեկտեմբերի 12-ին կն-
քված բարեկամության, փոխադարձ օգնու-
թյան և հետպատերազմյան համագործակցու-
թյան պայմանագիրը։

Սովետական ժողովուրդը ոչ միայն օգնեց
հիտլերյան դավթիչների լծից Չեխոսլովա-
կիայի ազատագրմանը, այլև նրան լուրջ ա-
ջակցություն է ցույց տալիս երկրի տնտեսա-
կան վերականգնման գործում։

Սովետա-չեխոսլովակյան համագործակ-
ցության կարևորագույն էտապը հանդիսացան
ՍՍՌՄ-ի կառավարության ու չեխոսլովակյան
կառավարական դելեգացիայի միջև 1947
թվականի հուլիսին Մոսկվայում տեղի ունե-
ցած բանակցությունները։ Մանրամասն քն-
նության առնվեցին ՍՍՌՄ-ի ու Չեխոսլովա-
կիայի միջև տնտեսական համագործակցու-
թյան հարցերը, ըստ որում երկու կառավա-
րությունները պայմանավորվեցին, որ իրենք
համաձայնագիր կկնքեն ապրանքների փո-
խադարձ մատակարարման վերաբերյալ, հինգ
տարի ժամանակով։ 1948 թվականին Սովե-
տական Միությունը կմատակարարի առաջին
հերթին Չեխոսլովակիային 200 հազար տոն-
նա ցորեն, 200 հազար տոննա հատիկային

անասնակեր և կերի եգիպտացորեն, 60 հազար տոննա կալիումային պարարտանյութեր, 5 հազար տոննա ազոտային պարարտանյութեր, 20 հազար տոննա բամբակ, յուղատու սերմեր, սիսեռ, ոսպ, բուրդ, երկաթի, մանգանի ու քրոմային հանքաքար, ֆերրոձուլվածքներ, ֆենոլ, ֆոսֆատներ և այլն։

Չեխոսլովակիան, այլ ապրանքների թվում, Սովետական Միությունը կմատակարարի ռելսեր, շոգեքարշեր և երկաթուղային այլ սարքավորում, նավթարդյունաբերության համար խողովակներ, կոշկեղենի և շաքարի արդյունաբերության սարքավորում, դազգահներ, էլեկտրոմոտորներ, էքսկավատորներ, փոքր էլեկտրակայաններ, լոկոմոբիլներ, ցեղական անասուններ, շաքար, կոշկեղեն, տեքստիլ ապրանքներ։

Գնահատելով տնտեսական բանակցությունների արդյունքները, պրեմյեր-մինիստր Գոտվալդը հայտարարեց, որ ՍՍՌՄ-ի օգնությունը հարուստ ավանդ է Չեխոսլովակիայի տնտեսական զարգացման գործում և լուծում է չեխոսլովակյան տնտեսության մի շարք լուրջ հարցերը։

***

Երկու և կես տարի է անցել հիտլերյան բռնակալության լծից Չեխոսլովակիայի ազա-



տագրման ժամանակից։ Այս կարճ ժամանակամիջոցում երկրում ստեղծված է ժողովրդական ռեսպուբլիկա, որտեղ իշխանությունը պատկանում է ժողովրդին։

Հենվելով աշխատավոր մասսաների աջակցության վրա, Չեխոսլովակիայի նոր, դեմոկրատական իշխանությունը կարողացավ ամենակարճ ժամանակամիջոցում կատարել պրոգրեսիվ դեմոկրատական այնպիսի վերափոխումներ, որ ի վիճակի չէ կատարելու բուրժուական դեմոկրատիան։

Չեխոսլովակիան, ինչպես որ նոր դեմոկրատիայի մյուս երկրները, իր առանձնահատուկ ուղիներով ընթանում է դեպի սոցիալիզմը։

Ա. ԽԱՉԱՏՈՒՐՈՎ

——*——

## 1947 ԹՎԻՆ ,,ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ,,-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀԻՄՆԱԿԱՆ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿԸ

ՓԱՍՏԱԹՂԹԵՐ — №-ը

## ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՅՑՈՒՄՆԵՐԻ ԵՎ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐԻ ՇՈՒՐՋԸ



## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԸ

## ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ





## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ



——*——

